# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 12 | ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. | ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1918 | ՏԱՍԸ ՍԵՆԹ


ԱՌԱՋՆՈՐԴՈՂ

## ՏԱՐԻ ՄԸ ՅԵՏՈՅ

Տարի մը առաջ երբ թերթիս հրատարակութեան սկսանք, երբեք յաւակնութիւնը չունէինք թէ Ամերիկահայ գաղութին մէջ զգացուած կարեւոր մէկ պակասը կրնանք լեցնել, և ոչ ալ կ'սպասէինք որ ամեն տեղ սիրալիր ընդունելութիւն պիտի գտնէր ան, և ամեն անձէ ու տունէ ուր կը ղըրկէինք, «բարով եկաք, հրամեցէք, կարօտով կ'ըսպասէինք քու գալուդ» ըսելով պիտի դիմաւորէին զինքը: Ոմանք կարծեցին թէ մէկ երկու թիւ միայն հրապարակ հանելէ յետոյ, պատճառներ պիտի ունենայինք դադրեցնելու:

Բայց իրողութիւնն այն է որ մեր ծրագրած ուղիէն քալելով յուշիկ, ծառայեցինք մեր խոստման և այսօր «էջմիածին»ի 12 թիւերը իրարու քով բերելով, ունեցանք յիշատակի փոքրիկ հատորիկ մը: Թէ կարողացա՞նք ծառայել Եկեղեցիին կամ եկեղեցասէր հասարակութեան, ատոր պատասխանը մենք չենք որ պիտի տանք: Որեւէ քննադատ, եթէ երբեք կայ անորմով հետաքրքրուող քննադատ, թող առնէ և կարդայ մեր «Առաջնորդող»ները, ու եթէ գտնէ խօսք մը, միտք մը, գաղափար մը որ հակառակ ճշմարտութեան արտայայտուած ըլլայ, մենք պատրաստ ենք ընդունելու մեր սխալը: Մենք մեր բոլոր գրութեանց մէջ ի նկատի ունեցեր ենք մեր ներկայ վէրքերն ու ապագայ պէտքերը: Հոս անգամ մըն ալ կը շեշտենք թէ խորունկ են մեր ներքին վէրքերը: Մեր կեանքին մէջ անտեսանելի ախտերը այնչափ շատ են, որ հիւծախտաւորի նման երթալով հալ ու մաշ կըլլանք, կը քայքայուինք առանց զգալու, և կը կարծենք թէ ամենէն առողջ ազգն ենք աշխարհի վրայ: Հիւծախտաւորը երբ կը տեսնէ իր վարդագոյն այտերը հայելոյն մէջ, բնաւ չի հաւատար թէ ինք հիւանդ է, թեթեւ հազէ մը բռնուած՝ կը կարծէ որ այսօր կամ վաղը կ'անցնի: Բայց այդ «այսօր կամ վաղը» կը կրկնուի շարունակ մինչեւ որ ենթական ուժասպառ և մաշթափ կը ձգէ անկողին, բայց նա դեռ այդ վիճակին մէջ չի հաւատար թէ իր կեանքի կանթեղին պատրոյգը արդէն ճարճատիլ սկսած է ու իր օրերն համրուած են: Եւ ահա նա խամրած է արդէն:

Ափ մը ժողովուրդ ենք, թշնամի փոթորիկներէն քշուած ու տարտղնած աշխարհի չորս կողմերը, քանի՛ տեսակ կառավարութիւն, քանի՛ տեսակ միջավայր, քանի՛ տեսակ կլիմա, քանի լեզու և կրօններ. քաղաքական որքան տեսակ դրութիւններ կ'ազդեն մեր վրայ: Մօտալուտ է ժամը երբ պիտի հնչէ մեր ազատութեան զանգակը: Այդ ձայնը զմեզ բոլորս ալ պիտի հրաւիրէ մեր սիրական Հայրենիքը, մէկ հողի վրայ, մէկ երկինքի տակ, մէկ հաւատքով, մէկ սրտով ու հոգիով երթալ հոն ու ձեռք ձեռքի տուած աշխատիլ հոն, վերաշինել կործանուածները, զարգանալ աճիլ և մտնել քաղաքակիրթ ազգաց շարքերուն մէջ: Պիտի երթանք բոլորս ալ. հոն պիտի սիրե՞նք զիրար, պիտի գործակցի՞նք իրարու. ի՞նչ պիտի տանինք հետերնիս. տիրող կարգերուն ու օրէնքներուն յարգա՞նք, հնազանդութեան ոգի՞, թէ հեռ և ատելութիւն: Շատ տխուր, շատ դառն պիտի ըլլայ մեր կացութիւնը հոն, եթէ հոս սկսուած և

չարունակուած վէճերը, ըմբոստութեան կրքերը բեռնաւորենք ու հետերնիս տանինք: Չի տրուած ազատութեան, չի հաստատուած կառավարութեան վրայ հիմակուց կռիւներ սկսած են արդէն: Վայն է եկեր մեր գլխին, եթէ Դաշնակից պետութիւններէն մին չի պիտի հսկէ մեզի տրուած ինքնավարութեան վրայ: Բայց ամէն պարագայի տակ մենք պէտք է մեր ներքին չարիքներէն մաքրուած ու ախտերէն բուժուած ճամբայ ելլենք անկից. ապա թէ ոչ բնաւ տարակոյս չունինք թէ «յետինն չար քան զառաջինն» պիտի ըլլայ: Վասն զի գաղտնիք մը չէ ազգային կեանքով հետաքրքրուողի մը համար, թէ որքան անհատներ ու ընտանիքներ, որքան կուսակցութիւններ ու թերթեր, անեւը-րական աննշան խնդրով մը, գաղափարի տարբերութիւնով մը անհաշտ են դարձած իրարու. և ասոնցմէ իւրաքանչիւրը փոխանակ բարոյական միջոցներով և ճշմարտութեան փաստերով միւսը համոզելու, մէկը իր շահը, իր յաղթանակը միւսին վնասին, կործանումին ու նոյն իսկ մահուան մէջ կը փնտռէ: Անհերքելի է ասիկա. ահա հոս է որ երեւան կուգանք մենք հիւծախտաւորի իսկական հանգամանքով ու չենք տեսնար, չենք զգար: Չեմ կարծեր թէ մեր նիւթէն շեղում ունեցանք, որովհետեւ թերթիս նպատակն է մեր մէջ եղած ներքին աններդաշնակութիւնները մատնանշել, յառի երեւոյթները ուսումնասիրել, հոգեկան խնկածութիւնները տեսանելի ընել տալ, և համոզել զմեզ, որ նմանօրինակ ախտավարակ կացութիւնով զմեզ չի կրնար փրկել ու բարձրացնել որեւիցէ տեսակ կառավարութիւն: Աւետարանի պատգամն է որ պէտք է հնչէ մեր ականջներուն, մեր սրտերուն, Հայ ազատագրութեան նախօրեկին. «Պատրաստ արարէք զճանապարհ Տեառն և ուղիղ արարէք զշաւիղս նորա: Ամենայն ձորք լցցին, և ամենայն լերինք բլուրք խոնարհեսցին, և եղիցին դժուարինքն ի դիւրինս, և առապարքն ի հարթ ճանապարհս: Եւ տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ»: Մենք ազատութեան զաւակները պիտի ըլլանք. Ան՝ Ազատութիւնը մեր Տէրը պիտի ըլլայ և պիտի առաջնորդէ զմեզ մեր պարտականութեանց լուսաւոր ճանապարհին մէջ: Այդ ճամբան շիտակ պէտք է ըլլայ. խաբէութեան ձորեր, տիրապետութեան լեռներ, ամբարտաւանութեան բլուրներ պէտք չէ գտնուին անոր վրան: Հնազանդութիւնը, օրէնքն և եղբայրական միութիւնը ամէն դժուարութիւնները կը դիւրացնեն, առապարները հարթ ճամբաներու կը վերածեն: Այն ատեն է որ մենք պիտի տեսնանք ճշմարիտ փրկութիւնը:

Որչա՜փ շատ բան ունինք մենք այս երկրէն փոխադրելու մեր Ազատեալ Հայրենիքը: Նախագահը, ծերակուտականները, Երեսփոխանական ժողովոյ անդամները, որոնք գաղափարական տարբեր հոսանքներու կը պատկանին, թող սորվեցընեն մեզի թէ երկիր մը ի՛նչպէս պէտք է կառավարել: Զանոնք ընտրող հարիւր միլիոնէ աւելի ժողովուրդը, որոնց մէջ կրօնական և քաղաքական հակացողութեանց տարբերութիւնը անհաշուելի է, հնազանդութեան պարտականութեան մէջ մէկ գծի վրայէն կը քալեն: Եւ այս բանին ամենէն աւելի շատ պէտք պիտի ունենանք մենք մեր յարուցեալ Հայրենիքին մէջ, ապա թէ ոչ նոր տիկին մէջ հին գինի լեցնելուն, կամ նոր հանդերձի վրայ հին կարկտան դնելու կը դառնայ: Մին վտանգաւոր և վնասակար, միւսը ծիծաղելի և անճաշակ: Ե. Ք. Ընկերակցութեան և «Զանասիրաց»ներու քրիստոնէական ողջամիտ գաղափարները պէտք է որդեգրեն մեր երիտասարդները: Եկեղեցական հզօր կազմակերպութիւնք թող գիտակցութեան բերեն մեր ժողովուրդն ու եկեղեցականները որոնք կը ծնին ժողովուրդէն:

Եթէ կանուխէն իմաստութիւնը ունենայինք այս նիւթերուն վրայ խորհելու, եթէ մեր եկեղեցինները այս երկրին մէջ միացած համագործակցութեամբ առաջ քալէին, եթէ այդչափ քաղաքական թերթերու մէջ գէթ մէկ հատիկ ալ ունենայինք կրօնա-բարոյական թերթ ստուար ծաւալով և համապատասխան բովանդակութեամբ, գէթ երկու շաբաթն անգամ մը հրատարակուող, այդ չինիչ գաղափարները հետզհետէ ծաւալած պիտի ըլլային մեր մէջ, մեր պատանեաց ու երիտասարդաց մէջ, իգական սեռն ալ համընթաց ըլլալով անոնց հետ:

Մենք Ամերիկեան չուկայիկ կեանքը միայն կը տեսնենք ու գիտենք. պատեհութիւն չունինք դժբաղդաբար թափանցելու անոնց ներքին կեանքին: Այս միակողմանի ըմբռնումը շատերուն կարծել կուտայ թէ Ամերիկեան կառավարութիւնը եկեղեցիին կարեւորութիւն չի տար: Ի՞նչ աչքով պիտի նայէր Ամերիկեան կառավարութիւնը այս հարիւր հազարի չափ հալածուած ժողովուրդին վրայ, եթէ ան անոնց եկեղեցւոյ ապրէր այս երկրին մէջ: (*)

(*) Երբ խաղաղութեան պայմաններուն ստորագրուելու մեծ աւետիսը եկաւ Նոյ. 10ի Կիրակի առաւօտ, եկեղեցի կը գտնուէր այս երկրին Նախագահը՝ Ուիլսըն:

— Եկեղեցական գործօն կեանք ունեցող ժողովուրդի մը համար, կրօնական թերթի մը գոյութիւնը մանաւանդ այսպիսի երկրի մը մէջ անհրաժեշտ է։ Ու մենք ոչ թէ կրօնական թերթ մը այլ կրօնական թերթի մը գաղափարը տարածելու խոնարհ փափաքով միայն ձեռնարկեցինք ներկայ հրատարակութեան, որ իրականին մէջ Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ ամսօրեայ տեղեկատու յուշարար մը պիտի ըլլար։

Ահա թէ ինչո՞ւ առաջին նպատակին համար շատ փոքր, իսկ երկրորդին համար քիչ մը խոշոր է «Էջմիածին»ը։

Նիւթականին համար խօսիլ աւելորդ գանց ընելով, գրականին համար հարկ է որ ըսեմ թէ մեր դիմումները անոնց, որոնք յարմարութիւն ունէին այսպիսի թերթի մը մէջ երևնալով օգնելու և անոր ծաւալմանը սատարելու, մնացին ապարդիւն։ Ահա թէ ինչո՞ւ չի կրցինք պէսպիսութիւն դնել անոր պարունակութեան մէջ։

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ

### Հաստատուած Քրիստոնէական Սկզբունքներու վրա

Ամբողջ չորս տարիներէ ի վեր համաշխարհային դարձած պատերազմով մը երկրիս վրայէն խաղաղութիւնը հեռացած ըլլալով, բովանդակ մարդկութիւնը անձկանօք կ'սպասէր անոր վերադարձին։ Բարբարիկ զինուց շառաչմամբ կործանեցաւ մեր հայրենիքը և բնաջնջումի աւեր իրականութեան մօտիկցած էր մեր Ազգը։ Արդարութիւնը տարաւ իր յաղթանակը և մեր դարաւոր թշնամիները իրենց սխալին հետ կ'ողբան նաև իրենց ամօթալի պարտութիւնը։ Համաշխարհային խաղաղութեան փառաւոր արշալոյսը ծագած է արդէն և անոր ճառագայթները պիտի տարածուին նաև Հայաստանի վրայ։ Մենք ալ տէրը պիտի ըլլանք մեր հայրենիքին, մեր կեանքին, ինչքին ու պատուոյն։ Տարի մը առաջ «Էջմիածին»ի առաջին թուոյն առաջին յօդուածը կը վերջացնէինք սա տողերով. «մօտալուտ ժամանակի մէջ, Մայր Հայրենիքի և մեր հարազատներու վրայ տարածուած հեղձուցիչ մշուշին փարատուած ըլլալը և փրկութեան կենսաւէտ արշալոյսի մը ծագումը սոյն էջերուն մէջ արձանագրելու հրճուանքը ունենալու ըղձանօք, կը վերջացնենք՝ «Էջմիածին»ի հրատարակութեան առթիւ մեր առաջին խօսքերը»։

Մեր բաղձանքը իրականացած է այսօր, ու հրճուանօք կ'երգենք «Ընդ մեզ տէր Աստուած, գիտասջիք հեթանոսք և պարտեցարուք։ Լուարուք զայս ի ծագաց մինչև ի ծագս երկրի։ Հզօրացեալքդ պարտեցարուք։ Եւ զի թէպէտ և դարձեալ զօրանայք դարձեալ ի պարտութիւն մատնեսջիք։ Զխորհուրդն զոր խորհիք՝ խափանէ Տէր։ Զբանն զոր խօսիք մի մնասցէ առ ձեզ։ Եւ քանզի յերկիւղէ ձերմէ մեք ոչ երկիցուք և ոչ խռովեսցուք։ Եւ զՏէր Աստուած մեր փառաւոր արասցուք և նա եղիցի մեզ յերկիւղ, զի Աստուած ընդ մեզ է»։

Փա՛ռք Դաշնակիցներուն, պատիւ Ամերիկային, կեցցէ, յաւէրժ կեցցէ անոր իմաստուն նախագահը պատուական Վիլսըն։

## ԶԻՆՈՒՈՐ ՍԱՀԱԿ ՇԱՀՊԱԶԵԱՆ



Բնիկ Կիւրինցի, 22 տարեկան, շրջանաւարտ Ֆրէզնոյի Բարձրագոյն Դպրոցէն, քաղաքիս Ազատութեան գերեզմանատան մէջ հանգչող առաջին Հայ զինուորը եղաւ Ս. Շահպազեան։ Թաղումը զինուորական պատիւներով կատարուեցաւ Նոյ. 8ին, որուն կը նախագահէր Գեր. Տ. Բարգէն Եպիսկոպոս։

Տարաբախտ Սահակ, տոգորուած վառվռուն զգացումներով, այն ինչ կը հասնի Քէմփ Քըրնի, զոհ կ'երթայ տիրող համաճարակին, ու մարմինը կը փոխադրուի Ֆրէզնօ։

Յարգանք իր յիշատակին։

ETCHMIADZIN
A RELIGIOUS MONTHLY PAPER
PUBLISHED BY
REV. V. V. KASPARIAN
P. O. Box 290 Fresno, Cal.
SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter

VOL I, NO. 12, DEC., 1918. PRICE 10 CENTS

## ՖՐԷԶՆՈՅԻ Ս. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵԿԵՂ. ՊԱՏՄԱԿԱՆԸ

Դարերէ ի վեր իրենց բնաշխարհին պատերազմներու թատր դառնալու հանգամանքէն բռնադատուած, շարունակ հեռաւոր աշխարհներ գաղթել ստիպուած Հայութեան զանգուածները, իրենց գաղթավայրին մէջ հազիւ շունչ առած, անմիջապէս սեփական եկեղեցի ունենալու փափաքով մտահոգուեր են: Ամերիկահայ գաղթականութիւնը ոչ սակաւ փութաջանութիւն ցոյց տուեր է այդ մասին, Նոր աշխարհի ազատ հողին վրայ ոտք դրած օրէն, ուր՝ բազմաթիւ եկեղեցիներ շինելէ յետոյ, առաջնորդական կազմակերպութիւն ալ ունեցեր է, ընդ բարձր հովանաւորութեամբ Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսին, և Նորին Վեհափառութենէն վաւերացուած Սահմանադրութեամբ, որ հապճեպով պատրաստուած ըլլալով, վերաքննութեան ենթարկուած է այժմ:

Այսօր Արեւելեան և Արեւմտեան Նահանգներու մէջ ինը հատ սեփական եկեղեցւոյ շէնք ունինք, վեց հատ ալ վարձուած, եթէ չեմ սխալիր, որով տասնեհինգ մեծ ու փոքր եկեղեցիներ կ՚ունենանք Նոր Աշխարհի մէջ: Սան Ֆրանսիսկոյի Հայութեան վիճակը միայն ցաւալի է, որոնց թիւը վեց հարիւրէ աւելի է կըսուի, բայց եկեղեցի չեն ունեցած և ունենալու ջանքեր ալ չեն ըներ:

Ֆրէզնոյի մէջ եկեղեցի կառուցուած է 1900 թուին, երբ մեր ժողովուրդին թիւը հազիւ 200 էր հոս: Օծումը կատարուած է հանգուցեալ Տ. Յովսէփ Եպիսկոպոս Սարաճեանի կողմէն, 1900 Հոկտ. 14ին: Եկեղեցւոյ կից շինած են նաև սրահ մը, Ֆրէզնոյի Հայոց Գրադարանի Միութիւն անունով ընկերութեան մը ջանիւք, որ կը գործածուի իբր Գրադարան-լսարան և ապա կը ծառայէ նաև Հայկական դպրոցի, ուր հայ փոքրիկներ, Ամերիկեան դպրոցներէ արձակուելէ զկնի, կը հաւաքուին Հայերէն ուսանելու, յատուկ դաստիարակի մը առաջնորդութեամբ:

Այնուհետև Հայոց թիւը զգալապէս կ՚աճի թէ՛ տեղական ծնունդներով և թէ նորեկ գաղթականներով: 1912ին երբ մենք Ֆրէզնօ եկանք, վարելու համար Ս. Երր. Եկեղ. հովուութեան պաշտօնը, եկեղեցին անբաւական ըլլալ սկսած էր ժողովուրդին, տեղն ալ ոչ նուազ անյարմար էր:

Նոր եկեղեցւոյ մը շինութեան գաղափարը, աւելի յարմար գետնի մը վրայ, ծայր տալ սկսաւ ժողովուրդին մէջ, ու Ընդհանուր Ժողովը զայն վաճառելու որոշում տուաւ՝ իբր եկեղեցի գործածուելու որոշ պայմանադրութեամբ: Այս նպատակաւ օտար յարանուանութեան մը հետ համաձայնութիւն կնքուելու պահուն, նոյն թաղին մէջ ծագած հրդեհէ մը Եկեղեցին և դպրոցը միանգամայն բռնկելով՝ ժամուան մը մէջ մոխիր դարձան: Եկեղեցւոյ գոյքերէն շատ քիչ բան կարելի եղաւ ազատել: Այրեցան նոյն իսկ արձանագրութեանց կարևոր տետրակներ: Սոյն պատմական հրդեհը տեղի ունեցաւ 1913 Յուլիս 9, Չորեքշաբթի երեկոյեան ժամը 6.30ին: Ասով նոր եկեղեցի մը շինելու գաղափարը աւելի արագ մտաւ գործնական ճամբու մէջ: Այդ միջոցին եկեղեցական պաշտամունքները կը կատարուէին վարձուած սրահներու մէջ, իսկ մասնաւոր օրերու համար տրամադրելի էր Եպիսկոպոսականաց Եկեղեցին: Երախտագիտութեամբ պէտք է արձանագրել Քրիստոնէական եղբայրակցութեան այս սիրալիր ազնուականութիւնը: Դպրոցի համար ալ մասնաւոր տեղ մը վարձուելով, Հայերէն լեզուի դասընթացքը բնաւ չի դադրեցաւ:

Եկեղեցւոյ շինութեան գործը յանձնուեցաւ Ընդհանուր Ժողովէն ընտրուած յատուկ յանձնախմբի մը, որ նախնական պատրաստութիւնները տեսնելէ յետոյ, պեղման արարողութիւնը տեղի ունեցաւ 1913 Նոյ. 1ին, անձրևոտ օր մը: Ըստ ծիսի Հայաստանեայց Եկեղեցւոյ, յատուկ աղօթքները կարդացուելէ յետոյ, բրիչի առաջին հարուածը տուաւ Եկեղեցւոյս հովիւը Տ. Վարդան Ծ. Վարդապետ Գասպարեան և պատշաճ բանախօսութիւն մը ըրաւ: Նոյն պահուն շատ մը բարեպաշտներ իրենց մասնակցութիւնը բերին թանկա-

գին նուէրներով:

Հիմնարկէքի հանդիսաւոր արարողութիւնը կատարուեցաւ 1914 Յունուար 4ին: Նախագահութեամբ Եկեղեցւոյս հովուին, և ըստ կանոնի Հայաստանեայց Եկեղեցւոյ, նախ զետեղուեցան երկոտասան քարինք յանուն երկոտասան Առաքելոց: Նաև սակաւ մի հող Կարնոյ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքէն, և նշխար մը Պատարագի՝ Երուսաղէմի Ս. Յակոբեանց Վանքէն, որ երկար տարիներ իր մօտ խնամքով պահած ունէր ծերունի և բարեպաշտուհի Տիկին Մէրճան Նշկեան: Սոյն պատմական հանդէսին ներկայ էր Ֆրէզնոյի ամբողջ Հայութիւնը: Հայ Երիցական եկեղեցւոյ հովիւը Վեր. Մկրտիչ Գնաճեան, յատուկ ուղերձով մը իր խնդակցութիւնը և շնորհաւորութիւնը յայտնեց: Հիմանց մէջ զետեղուած իւրաքանչիւր քարին տարբեր կնքահայր մը կանգնած էր նուիրատուութեան մը փոխարէն:

Շինութիւնը փութոյ ընդութեամբ առաջ տարուելով՝ առաջին ժամասացութիւնը և Պատարագը մատուցուեցաւ ներքնայարկը, 1914 Ապրիլ 12ին, Ծաղկազարդի տօնին: Աշնան, երբ շինութիւնը աւարտելու մօտ էր, Նաւակատեաց կամ Օծման պաշտամունքին Եկեղեցւոյ նուիրապետական պաշտօնէութիւնը հոն լրիւ ներկայ ըլլալու համար, հրաւիրուեցաւ նաև Գեր. Տ. Մուշեղ Արքեպիսկոպոս Սերոբեանը, Պոսթընէն, որ գալով նախագահեց այդ հրաշափառ հանդէսին, 1914 Դեկտ. 13, որուն կը մասնակցէին Եկեղեցւոյ հովիւէն զատ՝ Արժ. Տ. Թէոդորոս Քահանայ Իսահակեան և Տ. Համազասպ Քահանայ Սարգիսեան:

Նաւակատեաց այդ հանդէսը եզականապէս փառաւոր էր: Պատարագը մատոյց Տ. Մուշեղ Արքեպիսկոպոս, և որուն խորհուրդը համեմեց պերճախօս ու հոգեցունց քարոզով մը, եկեղեցին նմանցնելով այն վերնատան, ուր առաքեալք հաւաքուած կ'աղօթէին, ու դուրս եկան անկէց Ս. Հոգիին շնորհներն զգեցած: Եկեղեցին կառուցուած է հազար հոգի պարունակելու չափով, բայց այդ օրուան խտացած բազմութիւնը երկու հազարէն պակաս չէր: Ներկայ էր նաև Եպիսկոպոսական Եկեղեցւոյն Եպիսկոպոսը՝ Գերաշնորհ Սանֆըրտ, որ Աւետարանէն հատուած մը կարդալով ուղերձ մը ըրաւ: Ներկայ էին նաև Երիցական և Ժողովական եկեղեցեաց երէցները՝ Վեր. Մ. Գնաճեան և Մ. Կ. Փափազեան՝ իրենց ժողովուրդներով միասին:

Սոյն տողերը գրողը փափաք յայտնեց շինութեան Յանձնախումբին, Ս. Սահակ-Մեսրոպ անուանել Եկեղեցին, սակայն անուանափոխութիւնը դժուար ըլլալու պատրուակութիւնով, որոշուեցաւ հին Եկեղեցւոյ անունը պահել, իսկ առաջարկուած անունները տալ աջ ու ձախ կողմերու խորաններուն, և ինձ վիճակելով զանոնք օծելու բացառիկ փառքը՝ աջակողմեանը Ս. Սահակ, իսկ ձախակողմեանը Ս. Մեսրոպ անուանեցի, ի յիշատակ մեր այբուբէնի հնարիչներուն և անմահ Թարգմանիչներուն: Դժբաղդաբար այդ պաշտելի անունները խորհրդանշող յարմար պատկերներ ցարդ կը պակսին նոյն խորաններուն վրայ:

Աւագ խորանին խաչկալին ձեւը առնուած է Պրուսայի Ս. Աստուածածին Եկեղեցւոյ Աւագ խորանին նկարէն: Եկեղեցին քառաթեւ է, առանց սիւնի: Ունի կանանց յատուկ վերնատուն, և լուսաւէտ կաթողիկէ մը կը հովանաւորէ նաւը: Երկու հարիւրի չափ ելեքտրական լապտերներ կը լուսազարդեն խորանները, կաթողիկէն ու ամբողջ ձեղունը: Կաթողիկէէն կախուած փառաւոր ջահը, որուն բազմաթիւ ելեքտրական լոյսերը մեր երկրի մոմերուն պատրանքը կուտան, յիշատակն է Սէմ Գարբիէլեանի: Շինութեան ծախք եղած է 25,000 տոլար, գետինովը միասին կը գնահատուի 30,000 տոլար: Սոյն գումարը Ֆրէզնոյի ժողովուրդէն հայթայթուած է, որուն մասնակցած են հազարի չափ անձինք, 5-է մինչև 300 տոլարով: Ճարտարապետն էր Պ. Պօղոս Գոնտուրաճեան, Պոլսեցի:

Եկեղեցւոյս պատկանող ժողովուրդը 3000էն պակաս չէ այժմ, և հետզհետէ զգալապէս կ'աճի ու կը բարգաւաճի: Այս ժողովուրդը շատ դիւրաւ կը բարգաւաճի: Այս ժողովուրդը շատ դիւրութեամբ կրնայ պահել Եպիսկոպոս մը, և մէկ կամ երկու քահանայ, ինչ որ եկեղեցւոյ փառքը պիտի պանծացնէ, կարգապահութիւնը պիտի կատարելագործէ և իրեն այցելող հաւատացելոց թիւը պիտի ստուարացնէ: Ներկայ դրութիւնը ամուլ է և դէպի ետ կը տանի մեզ:

Ի սրտէ կը փափաքինք և կը մաղթենք որ առաջնորդութիւն մը ունենալու համար անցեալ տարի սկսուած ձեռնարկը շուտով իրականանայ ի շինութիւն և ի բարեկարգութիւն Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ և համայն ժողովրդեան որք ցրուած կան Քալիֆօրնիոյ քաղաքներուն, գիւղերուն ու դաշտերուն մէջ:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՏԻՆ Ի ՆՊԱՍՏ ՀԱՒԱՔԱԿԱՆ ԴԻՄՈՒՄՆԵՐ ։

Քաղաքիս երեք հայ եկեղեցիներու հովիւներն ու հոգաբարձութիւնները, թելադրութեամբ Եկեղեցւոյս հովուին, և նախագահութեամբ Գեր. Տ. Բարգէն Եպիսկոպոսի, ժողով գումարելով՝ Հայաստանի ազատագրութեան պրօպականտի չար ժումին գործակցելու համար՝ խորհրդակցութիւն կատարեցին Նոյեմբեր 21ին, ու միաձայն հաւանութեամբ հեռագիրներ ղրկեցին նահանգիս երկու Ծերակուտականներուն՝ Ճանըրնի և Ֆիլընի, ինչպէս նաև հայասէր Տր. Ճ. Պարթընի, Նոյ. 22ին ։

Տր. Պարթըն երեք հովիւներուն ուղղեալ պատասխանով մը յայտնած է թէ ինք ամեն կերպով կ'աշխատի Հայոց համար լաւագոյնը ընելու և հաւաստած է որ ինք վստահ է թէ գոհացում պիտի տրուի Հայոց բաղձանքներուն ։

Նախագահ Ուիլսընի հեռագիրը ղրկուեցաւ Նոյ. 24ին, երեք հայ եկեղեցիներու մէջ աղօթքի համար հաւաքուած ժողովրդոց կողմանէ՝ ստորագրուած երեք հովիւներէն ։

Դեկտ. 1ին, Կիրակի առաւօտ, երեք եկեղեցեաց մէջ, նոյն իմաստով հեռագրել որոշուեցաւ բոլոր հայ կանանց կողմանէ Տիկին Ուիլսընի, և նոյն երեկոյին հեռագրուեցաւ ։

Նոյն օրը մեր Եկեղեցին զատկական հանդիսաւորութիւն ունէր ։ Համաճարակին պատճառաւ վեց շաբաթներէ ի վեր եկեղեցիէն զրկուած ժողովուրդը լեցուցած էր ամբողջ եկեղեցին ։ Պատարագեց Գեր. Տ. Բարգէն Եպիսկոպոս և քարոզեց՝ նիւթ ունենալով յաղթող Դաշնակից և Հայ քաջարի զինուորները. ակնարկութիւններ բրաւ վերականգնեալ Հայաստանի մէջ բարեկարգեալ եկեղեցւոյ մը գաղափարականին համար և ըսաւ թէ Հայ ժողովուրդը պէտք է ինքզինքը բարեկարգէ նախ՝ ըստ այնմ արժեցնելու համար անկախ Հայաստանը և անոր մէջ հաստատուելիք եկեղեցին ։

Պատարագէն վերջ հոգեհանգստեան հանդիսաւոր պաշտամունք կատարուեցաւ այն բոլոր զինուորներուն համար որոնք իրենց անձը զոհելով շահեցան ներկայ յաղթութիւնը ։

• • •

Արժ. Տ. Առամ Քահանայ Մելիքեան Լօս Անճըլըսէն կը տեղեկացնէ մեզի, թէ նոյն քաղաքի Եկեղեցեաց Երէցներու Միութեան նախագահէն, Կաթոլիկ Եկեղեցւոյ Եպիսկոպոսէն և Հայ Եկեղեցեաց երէցներէն հեռագրով խնդրուած է Նախագահ Ուիլսընէն՝ արդարութիւն ընել Հայոց դատին ։

---

## ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԿՈՆԴԱԿԻ ՄԱՍԻՆ

Ամերիկահայ բոլոր թերթերէն առաջ «Էջմիածին»ի մէջ հրատարակուեցաւ Վեհ. Կաթողիկոսի այն սրտառուչ կոնդակը, որով կը յանձնարարուէր, ինչպէս բովանդակ աշխարհի, նոյնպէս ալ Ամերիկահայ գաղութին ժողովներ գումարել և հրապարակային բողոքներ բառնալ այն աւազակային անիրաւութեանց դէմ որ տեղի ունեցած է Կովկասեան Կոմիսարիատի կողմանէ, գրաւելով Կովկասի մէջ գտնուած Հայոց եկեղեցապատկան կալուածները ։ Տարիներ առաջ Տ. Մկրտիչ Խրիմեան Կաթողիկոսին օրով ցարական կառավարութեան կողմանէ ևս եղած այսպիսի աւազակային ձեռնարկ մը փշրուեցաւ և ոչնչացաւ՝ ի սփիւռս աշխարհի ցրուած Հայութեան կողմանէ տեղի ունեցած բողոքներուն տակ ։ Պատճառ մը չկայ որ այս վերջինն ալ անոր պէս կըլլայ, մանաւանդ երբ աշխարհիս խաղաղութեան և արդարութեան զոյգ նժարները ամենուրեք կը գտնուին յաղթական Դաշնակիցներուն ձեռքը ։

Առաջնորդական Տեղապահ Տ. Շահէ Ծ. Վարդապետ շրջաբերականով մը ի միջի այլոց կը յանձնարարէ, կարդալ կոնդակը Եկեղեցեաց մէջ, ժողովներ գումարել ու Ամերիկեան Հայ քաղաքացիներու կողմանէ բողոքի հեռագիրներ տալ Ուաշինկթընի Արտաքին Գործոց Քարտուղարութեան, բացատրելով որ յափշտակուած կալուածները, իբր արդիւնք առատաձեռն նուիրատուութեանց, մէն մի հայ անհատի համազգային սեփականութիւններն են, և ոչ ոք իրաւունք ունի ըստ քմաց յարձակումներ ընելու անոնց վրայ ։

Կարգ մը բանաւոր պատճառներով կարելի չեղաւ մեզ ցարդ կարդալ Հայրապետական կոնդակը և գումարել բողոքի ժողովներ ։

Այս մասին ըլլալիք կարգադրութիւնը կը տեղեկացնենք թերթերու միջոցաւ ։

---

## ԱԶԴ

Տարին կը վերջանայ. կը յանձնարարուի այս առթիւ Եկեղեցւոյս տրատու անդամներուն փութալ վճարել իրենց տարեկան հոգևոր տուրքերը ։

## ԱՅԺՄԷԱԿԱՆՔ

Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետէն, Սր. Էջմիածինէն, լուր չստացուիր դժբաղդաբար:

Վերջի պահուն առնուած հեռագիրներէ կը տեղեկանանք թէ Դաշնակիցներու Կ. Պոլիս մտնելէն յետոյ վերահաստատուած է հոն Հայոց Պատրիարքութիւնը, զոր լրբենի յանդգնութեամբ մը ջնջել ուզած էին, կարծես կործանելու համար միայն ստեղծուած զազիր Թուրքերը:

Բայց ցաւալի է, որ չի գիտցուիր, թէ ու՞ր է մեծադէտք տարագրուած Ս. Պատրիարքը:

Գեր. Տ. Ստեփանոս Արք. Եպս. Յովակիմեան Նիկոմիդիոյ բազմավաստակ և անձնուէր ծերունազարդ Առաջնորդը Փորթ-Սայիտ կը գտնուի:

Տասնեակ հազարաւոր մղոններով հեռի վայրերէ եկած այս լուրերը երբ կ'արձանագրենք, կարելի չէ անտեսել այն անպատեհ իրողութիւնը թէ հոս Ամերիկայի մէջ Բոստոնի Ազգ. Առաջնորդութեան ղրկուած մեր պաշտօնական նամակներն անպատասխանի կը մնան և քանի մը ամիսն անգամ մը տպեալ շրջաբերականներ մը միայն կը ղրկուին, որոնց պարունակութիւնը ազգային թերթերէն ալ կիմանանք:

Գեր. Տ. Բարգէն Եպս. Կիւլէսէրեան Նոյ. 2 էն ի վեր քաղաքս կը գտնուի: Այս միջոցին համաճարակ հիւանդութեան պատճառով եկեղեցիները փակուած էին: Նորին Գերապատուութիւնը ներկայ եղաւ եկեղեցւոյս հովուին ընկերակցութեամբ Ամերիկեան երէցներու միութեան ժողովին և գրաւոր ճառ մը կարդալով անոնց ուշադրութիւնը հրաւիրեց ազգիս քաղ. վիճակին ճըգնաժամային վիճակին վրայ, որ իր արդիւնքն ունեցաւ:

Նոյ.ի վերջին կիւրակին ալ եկեղեցին բացուած ըլլալով ներկայ եղաւ պաշտամանց և քարոզեց օրուան կարեւոր խնդրոյ շուրջ:

Ամերիկեան շնորհակալութեան մեծ օրը, որուն այս տարի մասնաւոր կարեւորութիւն տըրուեցաւ ամբողջ Ամերիկայի մէջ, Տ. Բարգէն եպս. եկեղեցւոյս հովուին հետ ներկայ եղան այն վսեմ և տպաւորիչ պաշտամունքին որ տեղի ունեցաւ օտիթորեոմի ընդարձակ սրահին մէջ բոլոր Ամերիկեան երէցներու մասնակցութեամբ:

Եկեղեցւոյս պատ. հոգաբարձութիւնը գնեց վէնթիւրրա փողոցին վրայի եկեղեցւոյ կից գետինը, որուն վրայ փոքրիկ տուն մըն [illegible] 3400 տոլարի:

## ՀԱՅ ՊԱՆԴՈՒԽՏԻՆ ԵՐԳԸ

Ես արդ յարաժամ կարօտով շրջիմ,
Օտար անծանօթ և անմտերիմ.
Հեռի ի տանէ մանկութեան իմոյ,
Հեռի ի գրկաց մօր իմ ծերունւոյ:

Տո՛ւն,, տո՛ւն, տուն քաղցրիկ,
Քաղցր ես Հայրենիք, քաղցր ես Հայրենիք:

Կեցի ես ուրախ ի տան իմ փոքրիկ,
Ի Հայաստանայ դաշտ մի երջանիկ.
Ուր իմ զարդարանք փոխան դոհարի,
Էին հարեան ծաղկունք իմ վայրի:

Տո՛ւն, տո՛ւն, տուն քաղցրիկ,
Քաղցր ես Հայրենիք, քաղցր ես Հայրենիք:

* * *

Սոյն գեղեցիկ երգը անտիպ է և հեղինակը անծանօթ: Կ'երգուի ճիշդ Անգլիերէն Հօմ, Սուիթ Հօմ երգին եղանակաւ: Փորձեցէք երգել զայն ազգային հանդէսներու և ժողովներու մէջ, ու շատ տպաւորիչ պիտի ըլլայ անոր ազդեցութիւնը:

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Եկեղեցի, Կիրակնօրեայ և Հայերէն դպրոցներ վերսկսած են իրենց կանոնաւոր ընթացքը: Ուշադիր եղէք որ ձեր զաւակները կատարեալ ճշդութեամբ հետեւին երկու դպրոցներուն հաւասարապէս:

Իսկ մեծով պզտիկով Կիրակի առաւօտները բնաւ և ոչ մէկ պատճառով բացակայ մի ըլլաք Եկեղեցիէն:

Հայերէն դպրոցի օրերն են՝

Երկուշաբթիէն մինչև Ուրբաթ, ամէն օր, Ամերիկեան դպրոցէն յետոյ, ցնոր կարգադրութիւն

## ՄԿՐՏՈՒԹԵԱՆ ՎԿԱՅԱԿԱՆՆԵՐ

Մինչև Դեկտ. 1 կատարուած բոլոր մկրտութեանց վկայականները լեցուած պատրաստ են. անոնք որ տակաւին չեն առացած իրենց վկայականը, Կիրակի առաւօտները թող Պատ. Հոգաբարձութեան խորհրդարանը դիմեն ու առնեն:

Վկայականները ստացած ըլլալով, ի Նորոյ Կ'ուղղուի Առաջնորդարանէն, և կը յուսանք չի յապաղիր առաքումը:

## —ՏՕՆԱՑՈՅՑ—

* * *

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1. Կիր. ԲՁ. Ժրդ զկնի Խաչին։

4. Գշ. ԳԿ. Պահք, բայց տօն երից ամաց ընծայման Սուրբ Կուսին ի Տաճարն։

7. Շբ. ԱՁ. Տօն Սրբոցն Գրիգորի Սքանչելագործին, Նիկողայոսի Հայրապետին, և Միւռոնայ Եպիսկոպոսին։

8. ԿԻՐ. ԱԿ. Ա. Յիսնակաց։

14. Շբ. ԴԿ. Տօն Սրբոցն Առաքելոցն և առաջին Լուսաւորչացն մերոց ԹԱԴԷՈՍԻ և ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍԻ։

15. ԿԻՐ. ԱՁ. Բրդ Յիսնակաց։

17. ԲՁ. Տօն Սրբոյն Աբգարու Թագաւորին։

21. Շբ. ԴՁ. Տօն Սրբոյն Նիկողայոսի Զմիւռնացւոյ սքանչելագործ Հայրապետին։ Երեկոյին Նախատօնակ։

22. ԿԻՐ. ԴԿ. Գրդ Յիսնակաց։ Բարեկենդան Ս. Յակոբայ, և Տօն յղութեան սրբոյ Կուսին ի յԱննայէ։

28. Շբ. ԳԿ. Տօն Սրբոյն Յակոբայ Մծբնայ Հայրապետին, Մարուգէի Ծգնաւորին և Մելիտոսի Եպիսկոպոսին։

29. ԿԻՐ. ԴՁ. Դրդ Յիսնակաց։

## *ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ*

### Մահագրութիւն

*Սահակ Շահպազեան, զինուոր, Նոյ.* 8
*Տիկին Օղիտա Յակոբեան, Նոյ.* 18
*Սարգիս Սրապեան, Նոյ.* 18
*Տիկին Սէլվի Մարգարեան,*
*Խոսրով Շիշմանեան, Նոյ.* 29

### Մկրտութիւն

*Կ. Նաճարեանի երախան Վերժին Նոյ.* 17
*Գէորգ Գասպարեանի երախ. Գոհարիկ Նոյ.* 19
*Գ. Եղիկեանի երախան՝ Աստղիկ*
*Գ. Եղիկեանի երախան՝ Արշալոյս*
*Ա. Սարգիսեանի երախան՝ Տիգրան*

## *ՔԱԼԻՖՕՐՆԻԱ ՆՈՐ ԵԿՈՂՆԵՐՈՒՆ*

*Արեւելեան նահանգներէն մեծ թուով Հայեր եկած են Քալիֆօրնիա գալ ու հաստատուիլ այս շրջանակին մէջ՝ լաւ ըլլալով այգեգործութեան մէջ առաջ եկած յաջողութեան մասին։ Մենք չենք գիտեր թէ որչափ չիտակ է այսպիսիներու ընթացքը, բայց կը փափաքինք գիտնալ անոնց հաստատուած տեղերը ու ծանօթանալ անոնց հետ։*

## *ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՕՎՈՒԻՆ*

*Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ։*
*Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ։*
*Երբ գիտես թէ խռովեալներ կան։*
*Երբ գիտես թէ նորեկ կայ։*
*Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ։*
Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—
—Թէլէֆօն 4138- W—


ԷՋՄԻԱԾԻՆ
Կրօնա-Բարոյական Ամսաթերթ
Հրատարակութիւն՝
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ
Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար
*Նամակ, ծրար ևն. ղրկուելու են վարի հասցէով։ Բաժանորդագինը կանխիկ է։*
ՎԱՐԴԱՆ Ծ. Վ. ԳԱՍՊԱՐԵԱՆ,
Փօսթ Օֆիս Պօքս 290, Ֆրէզնօ։